

**12/13.**
Lo scorcio della cappella di S. Astvatzatzin e il portale con la Madonna affiancata da angeli.
Partial view of the St. Astvatzatzin chapel and the portal with Madonna with angels in both sides.

**14/15.** Cappella di S. Astvatzatzin. Ingresso del piano inferiore e parte superiore della facciata ovest.
The St. Astvatzatzin chapel. The entrance of ground floor e upper part of the west façade.







**16/17.**
Chiesa di S. Karapet e *gavit'*.
Facciate meridionali.
The Church of St. Karapet and *gavit'*.
Southern façades.







**18/19.**
Chiesa di S. Karapet. Interno.
The Church of St. Karapet. Interior.

**20.**
Chiesa di S. Karapet.
Interno e ingresso occidentale.
The Church of St. Karapet.
Interior and western entrance.



**21/22.**
*Gavit'*. Ingresso alla chiesa di S. Karapet con i *khatchkar* affiancati.
*Gavit'*. Entrance to the Church of St. Karapet with *khatchkars* at the sides.





**23/24.**
*Gavit'*. Prospetto ovest con il dettaglio del portale dell'ingresso.
*Gavit'*. The west façade with a detail of the portal of the main entrance.





**25/26.**
*Gavit'*. Prospetto ovest.
Decorazione della finestra superiore.
*Gavit'*. West façade.
Decorations of the upper parts.

**27/28.** *Gavit'.* Dettagli architettonici dalla parte superiore dell'interno.
*Gavit'.* Architectural details of the upper parts of the interior space.





**29/30.**
*Gavit'*. La veduta dell'interno e zenitale della copertura.
*Gavit'*. Interior view and zenital one of the dome.

# Rilievi / Surveys

**Planimetria generale / General plan**
scala / scale 1:500

1. Chiesa di S. Grigor Lusavoritch (1275)
   The Church of St. Grigor Lusavoritch (1275)
2. Chiesa di S. Karapet (1221-1227)
   The Church of St. Karapet (1221-1227)
3. *Gavit'* (1261)
4. Chiesa uninavata
   A Church
5. Cappelle funerarie
   Funerary chapels
6. Cappella funeraria di S. Astvatzatzin (XIV sec.)
   St. Astvatzatzin funerary chapel (XIVth century)
7. Edifici di servizio
   Other buildings of the monastery
8. Mulino e altri edifici
   Oil mill and other buildings
9. Cappelle funerarie
   Funerary chapels



*Gavit'* - Sezione verso est / Section towards east.



*Gavit'* - Prospetto ovest / West elevation.

**Pianta / Plan**



1. Chiesa di S. Grigor Lusavoritch (1275)
   The Church of St. Grigor Lusavoritch (1275)
2. Chiesa di S. Karapet (1221-1227)
   The Church of St. Karapet (1221-1227)
3. *Gavit'* (1261)



S. Astvatzatzin - Prospetto sud / South elevation.





S. Astvatzatzin
Prospetto nord / North elevation.



S. Astvatzatzin
Piante del piano terra e del primo piano.
Plans of the ground and the first floor.





S. Astvatzatzin - Sezione trasversale / Transversal section.








S. Astvatzatzin
Prospetto est e ovest / East and west elevation.







Cappella funeraria. Pianta, sezione e prospetto.
Funerary chapel. Plan, section and elevation.







Chiesa di S. Grigor Lusavoritch.
Pianta, sezione, prospetto.
The Church of St. Grigor Lusavoritch.
Plan, section and elevation.



# ԱՄԱՂՈՒ ՆՈՐԱՎԱՆՔԻ ՎԱՆԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐԸ

ԱՏՐԻԱՆՈՅ ԱԼՓԱԿՈՅ-ՆՈՎԵԼԼՈՅ

Ամաղու Նորավանքի վանական համալիրը հայկական բարձրավանդակի կեդրոնը կը գտնուի, Սիւնիք պատմական գաւառին մէջ (Ներկայիս Միկոյեանի շրջան, Եղեգնաձորի մարզ, Հ.Ս.Ս.Հ.), նոյն անունը կրող գիւղէն քանի մը քմ. հեռու, Վայոց Ձորին մէջ:

Համալիրի անունը (Նորավանք) արդէն մեզի կը փաստէ՝ թէ հասուն միջնադարի կառոյց մըն է ան: Սելջուկեան ասպատակութիւններէ եւ Մանազկերտի պատերազմէն վերջ (1071), երկիրը նոր ծաղկում մը կ'ապրի կղզիացած անկիւններու մէջ՝ ազգային միասնականութեան քայքայման պատճառով: Այս ծաղկումը տեղի կ'ունենայ ազնուական մի քանի ընտանիքներու հովանիին ներքեւ (Տէր-Ներսէսեան), որոնց ծիրին մէջ կը ծնին եւ կը զարգանան տեղական «դպրոց»-ները: (Տես ՍՏ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ, Սիւնիքի դպրոցը հայկական ճարտարապետութեան, Երեւան 1960, եւ Բ. ՔՈՒՆԷՕ, «Le scuole regionali nell'architettura armena», Atti del Primo Simposio Internazionale di Arte Armena 1975, Վենետիկ 1978): Այս դպրոցները եզական բնոյթ ունին, թէ՛ ճարտարապետական գետնի վրայ եւ թէ կիրարական արուեստներու մէջ:

Ինչպէս ծանօթ է, այս գեղարուեստական հարստութիւնը գործն է կառուցողներու եւ քանդակագործներու, որոնց յաճախ անունն անգամ մեզի ծանօթ չէ: Անոնց աշխատանքը իրենց գաւառի սահմաններէն դժուար է որ դուրս գար, մինչդեռ տարբեր շրջաններու ուրիշ կառուցողներու գործերուն համբաւը մերթ նահանգի սահմաններէն ալ դուրս կու գար:

Երկրին մշակութային եւ տնտեսական վիճակը միաձեւ չէ հետեւաբար: Օրինակի համար, Շիրակը իր Անի մայրաքաղաքով, Բագրատունեանց ընտանիքի ձեռքին տակն էր եւ մեծ կարաւաններու անցքի եւ հաղորդակցութեան կեդրոնի մը դերը կը կատարէր:

Քաղաքին Բիւզանդացիներու կողմէ գրաւումը եւ յետոյ Թամարա թագուհիին կողմէ վրացահայկական զօրքերով քաղաքին ազատումը, կարեւոր պատահարներ են, որոնք կ'ընդգծեն արուեստի բնագաւառին մէջ եղած ազդեցութեանց զանազանութիւնները:

Հարաւային եղերքի նահանգները ինչպէս Վասպուրականը եւ Վանի շրջանը (Արծրունիներու ձեռքին տակ) եւ Սիւնիքը որ մեզ մասնաւորապէս կը հետաքրքրէ, կապուած՝ Օրբէլեան ընտանիքին, աւելի պարզ ընդգրկում մը ունին, հակառակ որ կարելի չէ մանաւանդ ճարտարապետական տեսանկիւնէն բաղդատել զայն հիւսիսային ուրիշ շրջաններու հետ (օրինակի համար Զաքարեաններու պատկանող Գուգարքի նահանգը), նկատի առնելով Հաղբատի, Սանահինի եւ Գոշավանքի վանական համալիրները: Հողամասին վրայ, նախ սելջուկեան եւ յետոյ ալ մոնղոլական ասպատակողներու ներկայութիւնը առիթ կու տայ որ հայկական արուեստին մէջ «տափաստաններու մշակոյթ»էն բաղադրեալ մասնիկներ մտնեն: Անշուշտ դեկավարեալ իւրացումներ են, որ է ըսել, գիտակից եւ փափաքուած, որոնք կը համապատասխանեն հայկական ճաշակին եւ ոչ մէկ ձեւով չեն խորտակեր անոր համաչափութիւնը եւ թուաբանական խստութիւնը:

Ամաղու Նորավանքի օրինակին մէջ կ'արժէ սկսիլ տեղի որոշումին հարցին քննութեամբը: Համոյթը բոլորովին կղզիացած անկիւն մըն է որ կը գտնուի ամայի ձորի մը հարաւային լանջերուն վրայ, գրեթէ բոլորովին միացած զինքը շրջապատող բնութեան հետ, առանց կորսնցնելու իր մեծութիւնը եւ հանդիսաւորութիւնը:

Ինչպէս յաճախ կը պատահի հայկական ճարտարապետութեան մէջ, կառոյցը կը ծառայէ միայն «բնական» ճարտարապետութիւնը ամբողջացնելու:

Նիւթի միութիւնը համոյթին եւ բնական ժայռերուն միջեւ՝ կը դիւրացնէ այս մտերիմ զրոյցը որ կը համապատասխանէ զոյգ պահանջի մը, հոգեկանին եւ գործնականին (կը համապատասխանէ նաեւ պաշտպանողական սկզբունքներու, թէեւ պաշտպանութիւնը աւելի վստահուած է բնավայրին, որ կը խորհրդանշէ մայր հողը):

Նոյնպիսի նախընտրութիւններ ունինք նաեւ Արենիի եկեղեցիին եւ Թանահատի վանքի օրինակներուն մէջ, որոնք, բնութեան մէջ թաղուած, կը տեղեկագրեն շրջանակի անսահմանութիւնը:

Կ'արժէ նկատի առնել նաեւ այն երեւութային աններդաշնակութիւնը, որ գոյութիւն ունի ճարտարապետական համալիրի եւ տրուագիծին միջեւ (երեք եկեղեցիներու նոյն գիծին վրայ տեղադրումը – Կեչառիս եւ կամ Վանեվան կամ Արատես վանք), եւ պաշտպանողական պարիսպներու ազատ յարմարումը տեղւոյն պայմաններուն, որոնք կ'այլափոխուին, մերթ ընդ մերթ կլոր կամ եռանկիւններով: Այս վիճակը կարելի է յաճախ տեսնել նաեւ կարեւորագոյն օրինակներու մէջ (Տաթեւ), ուր պատը միայն գործնական իմաստ մը ունի, իսկ ազօթավայրերը միշտ իմաստաւոր խորհրդանիշ մը կը կրեն:

Ամաղու համոյթը, վերջին վերամաքրութեան եւ խորաչափութեան աշխատանքներէն վերջ (1982/85ին վերջացան 1948/49ին սկսած վերականգման աշխատանքները) մեզի կը ներկայանայ հետեւեալ ձեւով: Քովէ քով շարուած են երեք եկեղեցիներ, մեծ գաւիթ մը որ զետեղուած է կեդրոնական եկեղեցիին կողքին, երկյարկանի դամբան-մատուռ մը, պատերու հիւսիսային կողմը կռթնած եւ անոնցմէ զատ երկու փոքր դամբան-մատուռներ: Հարաւ-արեւմտեան կողմը գտնուող սենեակներու խումբէն միայն աւերակներ մնացած են մեր օրերուն:

Աշխատանքին կից զետեղուած են լուսանկարներ եւ գծագրական նիւթեր, որոնց օգնութեամբ կարելիութիւնը ունինք միայն էական հարցերու վրայ կեդրոնանալու եւ առանձին շէնքերու բացատրութիւնը չերկարաբանելու։

Ամենահին եկեղեցին Հարաւայինն է (մինչեւ այսօր անանուն եւ անթուական) որ կառուցուած է միագմբեթարդ տակառաձեւ կառուցումով, լայն եւ պայտաձեւ աբսիդով, որմէ կը սկսին երկու մատուռներ (իրարմէ անջատ), որոնք շատ փոքր չափով շինուած են (հաւանաբար իբր դամբան) եւ որոնք կը կրկնեն մեծ եկեղեցւոյ տիպարը։ Պատերու շատ լայն կառոյցը եւ կամարներու ձեւը կարծես կը փաստեն, շինութեան հնութիւնը։ (Չմոռնանք սակայն թէ պայտաձեւ կամարները, որոնք Հայաստանի մէջ տեսնուած են նախաքրիստոնէական շրջանին, կը շարունակուին մինչեւ ԺԲ/ԺԳ դարերը, ինչպէս մեզի կը փաստէ Կեչառիսը)։

Մեծ եկեղեցին որ «գմբեթաւոր սրահ»ի ձեւով կառուցուած է, Ս. Կարապետի նուիրուած, Լիպարիտ Օրբելեան իշխանի փափաքով (Էլիկումի գաւառը)։ 1221ի եւ 1227ի միջեւ շինուած է։ Վանական տիպար եկեղեցի մըն է, հասուն միջնադարեան շրջանի, որուն մէջ խաչաձեւ գմբեթաւոր կեդրոնական սրահը ութը փոքր մատրիկներով շրջապատուած է, երկու բարձրութեան վրայ զետեղուած՝ միաժամանակ մատուցանելու առիթը ընծայելու համար։

Հակառակ որ շէնքը մեծ մասամբ քանդուած է, եւ մանաւանդ գմբէթէն հետք չէ մնացած՝ վարպետ նախատիպի մը գոյութիւնը կարելի կ'ընէ ենթադրել ճարտարապետական համոյթին կորսուած մասերը, մանաւանդ գմբէթը եւ հովանոցաձեւ ծածքը։ Պէտք է յիշել թէ այս ձեւի ճարտարապետական լուծումը, հայկական ճաշակի տիպար օրինակն է ԺԱ. դարէն մինչեւ ԺԲ. դար (Անիի դպրոցը, Ամբերդը, Մարմաշէն, Բջնի, եւլն.) ուրիշ կապ մը եւս, մայրաքաղաքի ճարտարապետութեան հետ կարելի է նկատել նաեւ բոլորաձեւ պատուհանները։ Ներքին կառոյցին մէջ ամենահետաքրքրական մասնայատկութիւնն է զարդարուեստի տեսքը, որ կարելի է ամբողջովին զետեղել աւանդական գեղազարդարանքին մէջ, երկրաչափական օրինակներով, որ մասամբ հասունցած է սելջուկեան աշխարհի հետ ունեցած կապերուն ալ ազդեցութեամբ։

1261 թուականին, իշխան Սմբատ Օրբելեանի փափաքով, եկեղեցւոյ առջեւ (արեւմտեան ճակատ) մեծ գաւիթ մը կառուցուած է, գրեթէ քառակուսի գծագրութեամբ, տեղմուած դէպի արեւելք-արեւմուտք ուղղութեամբ, նկատի առած որ պարիսպին շատ մօտ ըլլալու պատճառով տեղի պակասը զգալի է։ Մասնաւոր հետաքրքրութեան առարկայ է եւ միակը իր ճարտարապետական տեսակին մէջ՝ ծածքը, որ միակ լայն գմբեթարդով եւ չորս շերտով կառուցուած, որուն ծայրը կը բացուի, քառակուսի հիմով «գմբէթիկ» մը, որուն կեդրոնը ակնաձեւ լուսամուտ մը գոյութիւն ունի։ Շատ արժէքաւոր է շթաքարային աշխատանքը։ Շթաքարային բնազարդը փոխ առնուած, իսլամական մշակոյթէն, ինչպէս նախապէս ալ յատկած էինք, ընդունուած է՝ որովհետեւ խորթ չի համեմատիր հայկական աւանդական զարդարուեստի սկզբունքներուն, ըլլա՛յ տրամաբանութեան, ըլլա՛յ երկրաչափութեան տեսակէտէն։ Գաւիթներու ծածքին մէջ (Գեղարդ, Գանձասար...) շատ գործածուած է։

Մեր օրինակին մէջ մինչդեռ, «երրեբանդ» մըն է որ կը հակասէ, մեծ գմբեթարդի շքեղ ու հանդիսաւոր պարզութեան հետ։ Կ'արժէ նկատի առնել նաեւ լոյսի հարցը, գաւիթի նման սրահի մը մէջ, ուր գենիթային լոյսի առանցքը տարածութեան կեդրոնը զետեղուած է։ Ամաղուի մէջ, շատ աւելի ընդգծուած է երկինք-երկիրը կապի խորհրդանիշը, լոյսը կողմնակի պատուհաններէն կը ներխուժէ, եւ անուղղակի կերպով կը տարածուի սրահին մէջ, որ կ'օգնէ աւելի լաւ տեսքը խաչքարերու, որոնք, քանդակուած են, բացուածքներու կողքին, մասնաւոր խորշերու մէջ տեղաւորուած։

Դուռը, գլխաւոր մուտքը ընդգծուած է ճարտարապետական զարդարանքով մը եւ բացառիկ կարեւորութիւն ունեցող քանդակով մը, որ Վայոց Ձորի դպրոցին պատկանող լուծում մըն է (տես Տէր-Ներսէսեան – Կարապետեան – Ենի)։ Մի քանի յստակ անպատշաճութիւններ, որոնք յայտնի են մանաւանդ եկեղեցւոյ ճակատին վրայ, մեզ կը ստիպեն մտածել թէ, հաւանաբար, ԺԳ–ԺԴ.ի սկիզբները, եկեղեցին «արժէքաւորելու» աշխատանքներ տարուած ըլլան (հոս կ'արժէ յիշել 1321ի նորոգութիւնները)։

1275 թուականին իշխան Տարսայիճ Օրբելեանի փափաքով Ս. Կարապետի Մայր եկեղեցիին քով աւելցուած է, միասրահ եկեղեցի մը, նուիրուած Ս. Գրիգոր Լուսաւորչին, որ իբրեւ ընտանեկան դամբան ծառայած է։ Այս գործողութիւնը մի քանի ճարտարապետական անկանոնութիւններ ունի, մանաւանդ մուտքի դռներուն անհամանութիւնը, ներսի, որմնամոյթին նախապէս գոյութիւն ունեցող եկեղեցւոյ հիւսիսային կողմը կոթնած ըլլալը, որ կը փակէ պատուհան մը եւլն.։ Հակառակ այս բոլորին, սակայն, այս յաւելեալ աշխատանքներու մէջ ալ տեսնուած ճաշակը մեզի մտածել կու տայ թէ յաջորդական աշխատանք տանող վարպետներն ալ աչքի առջեւ ունեցած են, նախապէս պատրաստուած նախագիծ մը։

Բոլորովին եզական գիրք մը ունի սակայն Ամաղուի համալիրին կցկցուած վերջին կառոյցը, որ մատուռ-դամբան մըն է երկու յարկանի, նուիրուած Ս. Աստուածածնի։

Իշխան Բուրթէլ Օրբելեանի փափաքով կառուցուած այս եկեղեցին գուցէ համալիրին ամենանշանաւոր շէնքն է, որ մեծ հաւանականութեամբ կը պատկանի Մոմիկ վարդապետի նախագիծին։ Ինչպէս յայտնի է Մոմիկ վարդապետ եղած է, վարպետ կառուցող մը, քանդակագործ, եւ մանաւանդ նոյն շրջանի «դպրոցի» մը իրական ստեղծիչը։

Անգամ մը եւս պէտք է նկատի առնել, տեղւոյն ընտրութեան հարցը։ Որպէսզի շէնքը, իր շրջապատի բոլոր տարածութիւնը շահագործելու կարելիութիւնը ունենայ կառուցուած է պատնէշին հարաւ-արեւելեան անկիւնը։ Այս ուղղութեամբ, ըստ մեզի կրկնակի արդիւնք մը ձեռք ձգուած է հետեւեալ ձեւով։ Լայն տարածութեան մը ստեղծումը՝ մուտքի ճակատի առջեւ եւ դամբանի բացայայտ զետեղումը, մանաւանդ դուրսէն եկողին նկատմամբ։

Երկու յարկանի եկեղեցին, Հայաստանի մէջ, առհասարակ, շատ փարթ պաշտօն մը ունի։ (Զանգակատուն – Սանահին, զանգակատուն և մատուռներ – Հաղբատ, գրադարան – Գոշավանք, կցկցուած մատուր դամբան – Քարուտան, եկեղեցի եւ դամբան – Եղվարդ, Նորավանք)։ Այս բոլորը հաւանաբար պէտք է կապել, նոյն ձեւի իրանա-իսլամական փորձառութիւններուն (կ'արժէ յիշել, Տամավանար [ԺԱ. դար] եւ կամ Վարամինը [1289] և սելջուկեան Անատոլիոյ [1232] Սուլթան Խանի Քէրվանսարայի փոքր մզկիթը, Կեսարիոյ Քէօշք Մէտրէսէի թիւրպէն [1339] եւ կամ աւելի ուշ օրինակներ, որոնք են, Վանի, Էրզրումի եւ Ախլաթի թիւրպէները եւլն.։ Նոյն ձեւի կառոյցներ գոյութիւն ունին նաեւ մօտակայ Վրաստանի մէջ (Կէլաթիի վանական համալիրին Ս. Նիկողոս եկեղեցին)։

Կառոյցին նախագիծը, հնագոյն օրինակներուն մէջ, պարզապէս քառակուսի է կամ ուղղանկիւնաձեւ եւ կը կրկնուի դէպի վեր բարձրանալով (Սանահին ԺԲ. դարու վերջ – ԺԳ. դարու սկիզբ)։

Հաղբատի օրինակին մէջ, հիմնական նախագիծը, արդէն իմաստալից կերպով խաչաձեւ է, որ վերջը ութանկիւնի կը վերածուի։ Աւելի հասարակ է քառակուսի նախագիծի լուծումը, որ անկիւն-

ները պարպունելովը խաչաձեւի կը վերածուի: Գոշավանք 1291, Եղվարդ 1321-28, Նորավանք 1339, Կապուտան 1349: Առ հասարակ կ'ընդգծուի առանցքի գագաթնահայեաց յօրինուածքը, վերի յարկի ծածքին վրայ, ուր շատ նուրբ եւ երկնասլաց գմբէթի աշտարակիկ մը կը բազմի չորս մը սիւներուն վրայ: Այս նախնական ծաւալներու դասակարգութիւնը որոնք մէկը միւսին մէջ սեղմըւած է կարծէք, զանգուածի արտաքերում մը կ'ունենայ գագաթնակէտային առանցքին շուրջ: Անգամ մը եւս կրնանք փաստել հայ գեղագիտական աշխարհին երկրաչափական-թուաբանական լուծումներու հանդէպ ունեցած նախասիրութիւնը: Բայց պէտք է միշտ նկատի առնել թէ, վերոյիշեալ հարցը միայն ձեւական ընտրութիւն մը չէ, այլ պատգամային նշաններ են, քարին յանձնըւած, որմով հայկական ճարտարապետութիւնը մասնաւորաբար հարուստ է: Այս բազմայարկ եկեղեցի-դամբանները, կարելի է բաղդատել գողտրիկ կոթողներու կամ, բուսական ծլարձակման հետ, որ գերակշռութեամբ կը ծաղկի հողէն, յամենայն դէպս յստակ կեանքի նշաններ են, որոնք մեզ չեն զարմացըներ՝ նկատելով եկեղեցին իբրեւ մահարձան (չմոռնանք որ կեանքի-մահուան մօտեցումը քրիստոնէական հոգեպաշտութեան խորհրդանիշներէն մէկն է որ մահը կը տեսնէ իբր կեանքի սկիզբը): Ծաւալներու եւ պաշտօններու իրար վըրայ զետեղումը կը մատնանշէ արժէքներու նուիրապետութեան շարունակեալ թեթեւացումը եւ պատային զանգուածի յառաճուն աննիւթականացումը:

Գողգոթայի ոգեկոչումը շատ պարզ կը թուի, ձգտում մը կայ վարէն դէպի վեր, հողէն դէպի երկինք, որուն կը համապատասխանէ ընդ հակառակն, լոյսի ներմուծումը (Գոշավանքի ձեռագրատան պարագան, ուր առաջին հարկն ալ ծածկուած է որպէսզի գագաթնակէտային լուսաւորութիւնը ուղղակի ըլլայ): Այս բարդ նշաններու ոգեկոչմանը կ'օգնէ գոյգ ատոփճաններու բնազարդին (որ գրեթէ նոյն ձեւով կը կրկնէ, կոթողային ձեւով, տանդուղներու ներքին լուծումը, որոնք անկիւնի մատուռիկներէն դէպի եկեղեցի եւ դէպի վանական սրահ կը տանին) որ կեդրոնական ճակատին վրայ (դժուար է բարձրանալ) եւ չորս ճակատներուն վրայ կ'ամբողջանան չորս քանդակներով, որոնք ամփոփումն են շարք մը ճարտարապետական դարձուածքներու, որոնք ծնունդ առած են հողէն եւ կ'արտաբերուին դէպի երկինք իբրեւ մեծ կեանքի ծառի մը արմատները:

## ՄՈՄԻԿ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ԺԳ–ԺԴ․ ԴԱՐԵՐՈՒ ԱՐՈՒԵՍՏԸ ՎԱՅՈՑ ՁՈՐԻՆ ՄԷՋ

ՃՈՒԼԻՈՅ ԵՆԻ

ԺԴ․ դարուն երրորդ եւ չորրորդ տասնամեակներուն եւ մանաւանդ Նորավանքի կառուցման ու զարդարման հետ կապուած է տաղանդաւոր Մոմիկ վարդապետի անունը:

Բազմակողմանի ստեղծագործական փորձառութեամբ օժտուած արուեստագէտ-հոգեւորականը, որուն դիմագիծին ըմբռնումը դեռ խորացումի կը կարօտի: Այնուամենայնիւ, որոշելու համար անոր Ամաղու վանական կառոյցներուն բերած դրական սատարը, կը կարծենք որ օգտակար է հոս խօսեցնել գոնէ մեզի ծանօթ եղական եւ ստոյգ տուեալները:

Հակառակ որ Մոմիկի ծննդեան թուականը անյայտ է մեզի – կարելի է զետեղել 1260ի շուրջ – սակայն իր գերեզմանի խաչքարէն հետեւցնելով, ստոյգ է թէ ան խոր ծերութեան հասած ըլլայ: Նոյն խաչքարը, աւելի վերջ գործածուած է Նորավանքի արեւելեան երեսին վրայ: Խաչքարի արձանագրութիւնը (CIAr, III, 800) անտարակոյս իր անունը կը կրէ, սակայն թուականին վերջին թուանշանին ընթերցումը կասկածելի կը մնայ քարի մաշումին հետեւանքով: «Տարի 782 [կամ 788] (որ կը համապատասխանէ 1333ի կամ 1393ի)․ Քրիստոս Աստուած յիշէ Մոմիկի հոգին եւ ողորմէ»:

Ընդունելով այս մահարձանին արուեստագէտին պատկանելիութիւնը կարելի է նշանակել այդ թուականը իբր անոր արտադրական կեանքին վերջաւորութիւնը: Ինչ որ կը վերաբերի անոր արուեստական կազմաւորումին, ան իր պատրաստութեան սկիզբը պէտք է անցուցած ըլլայ Գլաձորի «համալսարան»ին մէջ, որ Ներսէս Մշեցի վարդապետին կողմէ Թանահատի վանքին մօտերը, Վայոց Ձորին մէջ, Պռոշեան աւատական զօրաւոր ընտանիքի հովանիին տակ 1280 թուականին կառուցուած մշակութային եւ արուեստի կեդրոն մըն էր:

Եւ շատ հաւանաբար, ճիշդ ձեռագիրներու պատրաստութեան այդ կեդրոնէն (scriptorium) է որ ելած է Մոմիկին մեզի ծանօթ առաջին գործը, Ներսէսի կողմէ փափաքուած ձեռագիրը ու 1283-1284 թուականներուն գրուած է եւ ներկայիս կը պահուի Վիեննայի Մխիթարեաններու ձեռագրատան մէջ (թիւ 382): Այս ձեռագրին կը յաջորդեն վստահ կերպով ուրիշ ձեռագիր օրինակներ, որոնցմէ միայն երկու հատ – տակը տարուան հեռաւորութեամբ – մեզի հասած են յիշատակարանի ստորագրութեամբ, Երեւանի Մատենադարանին մէջ պահուած (թիւ 2848) 1292ի Աւետարանը եւ նոյն ձեռագրատան թիւ 6792 մատեանը: Սոյն ձեռագիրներուն արուեստական մասին կազմաւորումը ունի ամբողջութեամբ հայկական աւանդական բնոյթ: Այսպէս են սկզբնատառերը, լուսանցքի գծագրութիւնները, բոլոր էջը ծածկող աւետարանիչները ներկայացնող զարդարանքները, գլխաւոր սրբազան տօներու եւ տարբեր աւետարանական պատահարներու ներկայացումը, որոնք նոյնպէս ամբողջական էջին վրայ զետեղուած են:

Մոմիկի գործին մէջ, բոլորովին ձեւափոխուած է գեղագիտական զարդարումը, ուր անցեալի կոթողային էջերուն կազմաւորումը եւ գծագրութիւնը իրենց տեղը թողած են աւելի անձնական-ներքին ապրումներու՝ որոնց պատճառ հանդիսացած է նաեւ էջերու փոքրադիր չափը: Արուեստագէտին աշխատանքը հեռու է կիլիկեան ձեռագիրներու մէջ յայտնուած իշխանական ազդեցութենէն եւ աւելի պարզուած եւ ժողովրդականացած են իր մօտ զանազան դէմքերը: (Վերոյիշեալ տուեալները խառցած են 1302ի Աւետարանին մէջ [12 հրդմ․ × 8,7 հրդմ․] որ պատրաստուած է յայտնի պատմիչ Ստեփանոս Օրբելեանի փափաքով):

Անձերը շարուած են համաչափօրէն, բացի դէմքերու որոշ չափազանցութիւններէ, մինչ գոյներու քանակը աւելի քիչ է եւ նուազ փայլուն, շուքերու մութ ու տարբեր գունաւորումներով ճոխացած:

Մոմիկը գրչի եւ մանրանկարիչի աշխատանքներուն առընթեր, պէտք էր արուեստի տարբեր փորձառութիւններով օժտուած և հասունցած՝ քաջ ըլլար նաեւ արձանագործութեան արուեստին մէջ, նկատի առնելով որ ճիշտ այդ շրջանին կը զուգադիպի Վայոց Ձորի մէջ խաչքարերու քանդակագործական արուեստին շատ ճոխ եղանակ մը ապրիլը: Շէնքերու ճոխ զարդարանքն ալ նոյն շըրջանին պտուղն է, ուր հոգեւոր եւ աւանդական նիւթ ունեցող կենդանաձեւ զարդեր (երկրաչափական եւ բուսական) գործածուած են նաեւ կրօնական ճարտարապետութեան մէջ, որոնք բոլորն ալ տարբեր, սակայն ճշգրիտ իմաստներով լեցուն էին:

Մոմիկի յաջորդ աշխատանքը (որ մեզ Նորավանք կը փոխադրէ) Ս. Կարապետի գաւիթին մուտքին մօտ զետեղուած

գեղեցկագոյն խաչքար մըն է, որ այսօր փոխադրուած է Էջմիածնի Մայրավանքի թանգարանը: Զորս տողերու վրայ գեղեցիկ երկաթագրով փորագրուած գրութիւն մը, ուր կը յիշուի գործը ապրապրող ազնուականին անունը, գործին թուականը եւ աւանդական բանաձեւը.– «Ես Թամթա խաթուն կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգո աթաբեկ Տարսայիճին եւ արեւշատութիւն որդոց իմոց Բիւրթելին եւ Բուղտային. թիւ ՉԾԷ: (1308 թ.) Մոմիկ վարդապետ յիշեցէք»: Ինչպէս գրեթէ միշտ, խաչքարին գծագրուած մակերեսը երեքի բաժնուած է: ԺԱ. դարէն ի վեր, մեզի յայտնի է, կեդրոնական լայն եւ ընդարձակ ծաւալով, երկու կողմնակի երկնասլաց ժապաւէններով:

Կեդրոնը գետեղուած է գեղաքանդակ խաչ մը որ կը հանգչի աւանդական կլոր բնադարդին վրայ: Ամէն զարդաթնահայեաց ժապաւէն զարդարուած է բարձրաքանդակ ութանկիւն եօթը աստղերէ, որոնք հաւասարապէս եւ բացարձակ ճըշգրտութեամբ եւ համաչափութեամբ կը կրկնուին:

Բարձրագոյն մասին մէջ երեք բազմաբլթակ խորշեր գոյութիւն ունին, երեք տարբեր բարձրաքանդակ դէմքերով, օրհնութիւն բաշխող Քրիստոսի կերպարը կեդրոնին, իսկ երկու կողմերուն ալ Ս. Աստուածածինն ու Յովհաննէս Մկրտիչը: «Աղերսանք»ի (Deesis) այս պատկերագրութեան, մանաւանդ այդ շրջանի Վայոց Ձորի դամբանաքարերուն մէջ, յաճախ կարելի է հանդիպիլ: Օրինակի համար, Նորավանքի աւելի նախորդ շրջանի պատկանող խաչքարի մը վրայ (ԺԳ դարու կէսին) [Պռոշ իշխանի խաչքարը, ներկայիս Երեւանի Պետական Թանգարանին մէջ պահուած], Ալաքաքի (1340) դամբանին կամարի լուսամուտը, Սպիտակաւորի (շուրջ 1321) եկեղեցւոյ արտաքին ճակատը եւն.: Վերադառնալով սակայն Մոմիկի խաչքարին, աշխատանքի բացառիկ վայելչութիւնը կը փաստէ հասուն ու զարգացած արուեստագէտի դրոշմը, վստահաբար կերպարութեան եւ զարդարումի վարպետ մըն է ան, որուն ձեռագործ աշխատանքը կը զարմացնէ եւ բնական հանճարի սահմաններէն դուրս է վստահաբար: Քարին ընդհանուր մակերեսը, ծածկուած է ձեռագործի մը նման: Արդէն ըստ մեր կարծիքին արուեստագէտը ուզած է քարին կարծրութիւնը ընկճել իր մատներու հանճարով: Նոյն աշխատանքի արուեստն ու տեսակը կարելի է տեսնել տարբեր հաղուագիւտ գործերու մէջ, ինչպէս օրինակի համար, Գոշավանքի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան առջեւ գտնուող 1291 թուակիր Պօղոսի հոյակապ խաչքարին վրայ: Երկրորդ ուրիշ խաչքար մը որ ոճական պատճառներով կարելի է վերոյիշեալ վարդապետին վերագրել եւ որ նոյն վանքէն փոխադրուած է Երեւանի Պետական Թանգարանը: Նոյն աշխատանքներուն մէջ կարելի եղած է մինչեւ իսկ աւանդական բուսական բանաձեւը գործածել որ կազմուած է ոլորուածքներէ եւ թերթերէ, մանաւանդ խաչին խարիսխին գետեղուած:

Մոմիկ վարդապետի վերջին հաստատ գործը կը գտնուի Արենիի մօտ, Ս. Աստուածածին եկեղեցւոյ արեւմտեան կողմը՝ կամարի լուսամուտին եւ անոր վրայի տարածութեան միջեւ:

Ինչպէս մեզի ծանօթ է, հինէն, այս տեղը կը կոչուէր Արփայ, նոյն շրջանին կալուածն էր Օրբէլեան ընտանիքին: Ստեփանոս Օրբէլեան, իր Սիւնիքի Պատմութեան մէջ (ԿԶ), կը նշէ թէ Աթաբեկ Տարսիճը նոյն տեղը ապարանք մը ունէր եւ հոն ալ վախճանեցաւ 1290 թուականին: Ըստ սովորութեան այդ արձանագրութիւնը (CIAr, III, 61) կը պարունակէ եկեղեցւոյ անունը, կառուցման թուականը եւ յօրինողին ստորագրութիւնը:

«Ես Տէր Յովանէս Աւրպել Սիւնեաց Արհէպիսկոպոս, շինող սուրբ եկեղեցիս յիշել աղաչեմ. եւս եւ զվարդապետ իշխանաց իշխանն Ջարեան մերձաւորն իմ զքաջ մենապարտիկն զԲիւրթէլն եւ ըզդժխտափառ Քրիստոս աւէր զոյգն իւր զվախախն՝ նորաբողբոջ զաւակաւքն իւրեանց Բէշքէնիւն եւ Իւանէին: Թվ.: ՉՀ: (1321) Շարժ եղեւ. Մոմիկ վարդապետս»:

Մոմիկ վարդապետ, հետեւաբար, արձանագրութեան յստակ դիրքէն եւ իր պարունակութենէն կարելի է հետեւցնել թէ՝ ոչ թէ միայն կամարի լուսամուտին քանդակագործն է այլ բոլոր եկեղեցւոյ ճարտարապետը:

Փոքր ծաւալ մը ունեցող շէնքը մեզի կը ներկայացնէ խաչաձեւ սովորական դիրքը: Մանաւանդ ծաւալներու վերելութեան ձգտումը, յարակից ժամանակի ճաշակին, հաւանաբար սկզբնական շըրջանին կը վերջանար քլանաձեւ ծայրով մը որ այսօր դժբախտաբար իր արմատէն ընդհատուած է:

Նուրբ ու երկանիստ խորշերը՝ որոնք կեդրոնական աբսիդի երկայնքը կը սահմանեն, խոր պարզութիւն մը կը շնորհեն կառոյցին: Մայր դրան վրայ քանդակուած կամարի լուսամուտն ալ, որուն վրայ ներկայացուած է Մարիամ Աստուածածինը, Որդւոյն հետ (բիւզանդական սրբապատկերներու նմանութեամբ) կը ցայտէ զուսպ քանդակով մը: Պատկերազարդումը, շատ կիրթ աշխատանքով եւ բնական չափաւորեալ մեծութեամբ կատարուած է: Միայն Աստուածածնի սրունքներուն չափազանց իրարմէ հեռու ըլլալը պէտք է իբրեւ համաչափութեան պակաս նկատել:

Արուեստագէտը ջանացած է բուսական զարդերով հարստացնել եւ ճոխացնել բոլոր արձանագրութիւնները՝ որոնք խաղողի գեղաքանդակ ողկոյզներով վերջ կը գտնեն:

Եկեղեցւոյ մէջ ալ ուշադրութիւն կը գրաւեն չորս բարձրաքանդակներ, որոնք գուցէ Մոմիկի գծածներն են եւ սակայն նոյն ձեռքի աշխատանքին չեն պատկանիր, օրինակի համար, փաստօրէն բարձրորակ է հրեշտակի տիպարը իր ոճաւորումովը:

Պէտք է հոս նշել թէ արաբական բուսական քանդակները յաճախ գործածուած են հայկական քանդակագործութեան մէջ: Զանազան օրինակներ կան ԺԳ. դարուն պատկանող: Օրինակի համար, Աղճոցի Ս. Ստեփանոս եկեղեցւոյ (1212–1217) վրայ արծիւներու միջեւ գտնուող Դանիէլի տիպարը, կամ Յովհաննավանքի եկեղեցւոյ մայր դրան վրայ գտնուող տասը կուսանաց (Մատթէոս Ի. Ե. 1) քանդակը (1216–1221), դարավերջի քառորդին պատկանող շարք մը խաչքարեր, որոնց մէջ կարծէք յիշել Արարատի շրջանի Ջինկօլէն բերուած Ամենափրկիչի խաչքարը (1279), որ այսօր Էջմիածնի մէջ պահուած է, եւ ուրիշներ: Նոյն տիպի ուրիշ քանդակներու խումբին կը պատկանին Ջինճիրլուի եկեղեցւոյ մէջ գտնուողները (1301): Պէտք է նկատել սակայն թէ այս քանդակներէն ոչ մէկը իրեն ոճովը կը համապատասխանէ Մոմիկ վարդապետի, վերոյիշեալ կամարի լուսամուտի աշխատանքին: Մոմիկի աշխատանքը աւելի ոճական նմանութիւններ ունի Նորավանքի Ս. Կարապետ եկեղեցւոյ գաւիթին մէջ գտնուող կամարի լուսամուտին:

1261 թուականին Սմբատ Օրբէլեանի կողմէ կառուցուած այս եկեղեցին կը կարծուէր թէ 1321ին վերակառուցուած ըլլար, նկատի առած Բարխուդարեանի կարծիքը (CIAr, III, 705): Երկու կամարի լուսամուտներն ալ կը ներկայացուէին իբրեւ Մոմիկի գործը:

Աւաղեանը, սակայն, համաձայն չէր թէ՝ կառուցման եւ թէ վերակառուցման թըւականներուն եւ նոյնիսկ հեղինակին անուան վրայ:

Վարի կամարի լուսամուտը, ուրիշ հեղինակի մը վերագրել կարելի չէ, իսկ թուականն ալ 1321ի շուրջ է՝ Արենիի քանդակին թուականը: Նմանողութիւնները այնքան շատ են, որ կարելի է մինչեւ իսկ նոյն կաղապարէն եւ գծագրութենէն յօրինուած ըլլան: Տարբերակները շատ քիչ են: Կը փոխուին սակայն ներկայացման իմաստաւորումնե-

րը, որոնք մարդեղութեան խորհուրդը կը ներկայացնեն (Ս. Հոգին ներկայացնող աղաւնին, բուսական զարդարանքները, երկու մարգարէները)։ Այս խորհրդանիշերը կարելի է համեմատել պատուհանին վրայ գտնուող կամարի լուսամուտին հետ։ Ստեղծման բնարանը Վերնաշէնի Սպիտակաւոր եկեղեցւոյ (1321) հետ նոյնն է։ Նորավանքի պատկերաւորումը աւելի բարդ է եւ իր մէջ կը պահէ գողտրիկ պատգամներ, որոնք դեռ բոլորովին չեն լուսաբանուած։ Կարելի է Հօր Աստուծոյ ձախակողմը գտնուող արձանագրութիւնը աւելի ուշ ժամանակի մը վերագրել։ Հաւանական է որ նախապէս ձգուած պարապութիւնը կամաւոր ըլլայ։ Երկու կամարի լուսամուտներն ալ նոյն հանճարի ծնունդ են եւ նոյն ձեռքերով քանդակուած։ Ոճի եւ գեղարհեստական նրբութիւնները կը փաստեն երկու գործերու նմանութիւնները։

Նոյնպէս Մոմիկ վարդապետին կը վերագրուի Նորավանքի Ս. Աստուածածին եկեղեցւոյ կառուցումը, որ ինչպէս կը յայտնէ եկեղեցւոյ արեւմտեան երեսի արձանագրութիւնը՝ Բիւրթել Օրբելեանի ընտանեկան դամբանն է։ Եկեղեցւոյ երկրորդ յարկի արեւմտեան մուտքի շրջանակին վերին մասը, ուռուցիկ տառերով արձանագրուած է չորս տող։ «Կամաւն Աստուծոյ, ես Պարոն Բիւրթէլ իշխանաց իշխան եւ ամուսին իմ Վախախ եւ որդիք իմ Բեշքեն եւ Իւանէիկ շինեցաք զեկեղեցիս մեր հալալ արդեանց։ 788 (= 1339)»։ Այս օրինակին մէջ, ո՛չ եկեղեցւոյ ճարտարապետութիւնը եւ ոչ ալ զմայլելի զարդարումը Մոմիկին կարելի է վերագրել, զանազան պատճառներով։ Թուականը, օրինակի համար, մեծ հաւանականութեամբ եկեղեցւոյ կառուցման շրջանին է որ արձանագրուած է եւ ոչ թէ կառոյցը վերջ գտած տարին. հետեւաբար 1339ին եկեղեցւոյ կառոյցը դեռ չէր վերջացած, ընդհակառակն, նկատի առած կառոյցին շատ բարդ դիրքը, աշխատանքները պէտք էին հազիւ կէսով աւարտած ըլլալ։

Այդ թուականին, Մոմիկ վարդապետին տարիքը 80ի հասած պէտք էր ըլլալ. հետեւաբար անկարելի էր որ ինքը անձնապէս մասնակցէր կառուցման աշխատանքներուն։ Ուրիշներու համաձայն, այդ թուականին Մոմիկ արդէն 6 տարիէ ի վեր վախճանած պէտք էր ըլլալ։ Ըստ ուրիշ արձանագրութեան մը, որ Սանճեան կը վերագրէ Մոմիկին, այս վերջինը անկարող էր աշխատիլ, նկատի առած իր աչքերու տկարացման հարցը։ Տարբեր հարց մըն է անշուշտ, դեռ անլուծանելի, թէ արդեօք կառուցողական յատակագիծերը եւ զարդարանքները կարելի է վերագրել արուեստագէտի աշակերտներուն։ Ցաւալի է որ Նորավանքի եկեղեցին մեծապէս կը տարբերի վստահաբար Մոմիկի գործը եղող Արենիի եկեղեցիէն։ Նորավանքի եկեղեցին նմանութիւններ ունի ԺԴ. դարու երկու կառոյցներուն հետ, Եղվարդի Ս. Աստուածածին եկեղեցին (1321) եւ Կապուտանի Ս. Յովհաննէս եկեղեցին (1349)։ Եղվարդի եկեղեցին կ՚օգնէ մեզի Նորավանքի նախնական եկեղեցին վերակառուցանելու։

Նորավանքի զարդաքանդակները, հայ քանդակագործական արուեստի ամենահրաշալի օրինակներէն կարելի է նկատել։

Մինչեւ իսկ գործնական տարրերը զարդուած են գեղաքանդակներով։ Այս ճոխութիւնը կը տեսնուի թէ՛ Եղվարդի եւ թէ Սպիտակաւորի մօտ, բայց ոչ Արենիի մէջ։ Այն ինչ կը վերաբերի մայր դռներու կամարի լուսամուտներու խորաքանդակներուն՝ մօտակայ գաւիթի խորհրդանշական ոյժը կը պակսի իրենց։ Անոնք կը կապուին բիւզանդական աւանդութեան եւ իրենց բնադրոշմը կը մօտենայ Սպիտակաւորի Վարպետին գործերուն։ Թիւերին նոյն վարպետ ձեռքերուն վերագրուած էր նաեւ, մեծ ճըշգրտութեամբ, Նորավանքի ուրիշ շրջանի քանդակներ։

## ՑԱՆԿ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐՈՒ

**1.** Ամաղու Նորավանքի ձորը։

**2/3.** Ամաղու Նորավանքի ձորը։

**4.** Վանքը իր բնական շրջանակին մէջ։

**5.** Վանական համալիրը հիւսիս-արեւմուտքէն դիտուած։

**6.** Վանական համալիրին ամբողջական տեսքը։

**7.** Ս. Աստուածածնի տաճարը. արեւմտեան ճակատ։

**8.** Ս. Աստուածածնի տաճարը. արեւմտեան ճակատ։

**9.** Ս. Աստուածածնի տաճարը. հիւսիսային ճակատ։

**10.** Եկեղեցիի մը նախատիպը։

**11.** Օրբելեան ընտանիքի գինանշանը։

**12/13.** Ս. Աստուածածնի տաճարը, եւ երկու հրեշտակներով շրջապատուած Ս. Աստուածածնայ մայր դուռը։

**14/15.** Ս. Աստուածածնի տաճարը։ Վարի յարկի մուտքը եւ արեւմտեան ճակատի վերի մասը։

**16/17.** Ս. Կարապետի եկեղեցի եւ գաւիթը. հարաւային ճակատներ։

**18/19.** Ս. Կարապետի եկեղեցի. ներքին մաս։

**20.** Ս. Կարապետի եկեղեցի. ներքին մաս եւ արեւմտեան մուտք։

**21/22.** Գաւիթ. Ս. Կարապետ եկեղեցւոյ մուտքին կողմնակի խաչքարներ։

**23/24.** Գաւիթ. Արեւմտեան ճակատ եւ մուտքի դրան զարդարանքներու մանրամասնութիւնները։

**25/26.** Գաւիթ. Արեւմտեան ճակատ։ Վերին պատուհանի զարդարանքները։

**27/28.** Գաւիթ. Ներքին սրահի վերին մասի ճարտարապետական մանրամասնութիւնները։

**29/30.** Գաւիթ. Ներքին տեսք։ Ծածքի գէնիթային։

# Glossario essenziale / Essential glossary

**Amir** / Principe (titolo arabo)
**Amirspasalar** / Principe e capo delle armate
**Anapat** / Eremo
**At'abek** / Alto funzionario di corte
**Berd** / Fortezza
**Gavit'** / Ambiente quadrangolare anteposto alla chiesa, destinato ad usi civili e religiosi
**Kat'oghikos** / Massima autorità della Chiesa armena
**Kat'oghike** / Chiesa maggiore di un complesso monastico; cattedrale
**Khatchk'ar** / (khatch = croce, k'ar = pietra). Lastre di pietra che portano scolpita la croce ornata e decorata
**Ishkhan** / Principe
**Mandaturt'ukhutses** / Altissimo dignitario di corte (titolo georgiano)
**Marzpan** / Governatore
**Matenadaran** / Biblioteca
**Seghanatun** / Refettorio
**Shahanshah** / «Re dei re», titolo onorifico di origine persiana
**Türbe** / Tomba selgiuchide costituita da un volume cilindrico sormontato da una cupola conica
**Vank'** / Monastero
**Varpet** / Maestro, maestro costruttore, architetto
**Vardapet** / Dottore in teologia
**Zhamatun** / Sinonimo di *gavit'*
**Zangakatun** / Campanile

**Amir** / Prince (Arabian title)
**Amirspasalar** / Prince and commander-in-chief of the army
**Anapat** / Hermitage
**At'abek** / A highest Court dignitary
**Berd** / Fortress
**Gavit'** / Square space placed in front of the church, destined for both civil and religious use
**Kat'oghikos** / Head of the Armenian Church
**Kat'oghike** / Main church of a monastery complex; cathedral
**Khatchk'ar** / (khatch = cross, k'ar = stone). Slabs of stone, wich support ornate and decorated sculptured crosses
**Ishkhan** / Prince
**Mandaturt'ukhutses** / A highest Court dignitary (Georgian title)
**Marzpan** / Governor
**Matenadaran** / Library
**Seghanatun** / Refectory
**Shahanshah** / «King of the Kings» (Persian title)
**Türbe** / Seljuk tomb consisting of a cylindrical volume surmounted by a conical dome
**Vank'** / Monastery
**Varpet** / Master, master builder, architect
**Vardapet** / Doctor of divinity
**Zhamatun** / Synonym of *gavit'*
**Zangakatun** / Bell-tower